

# ՆՈՐ ՏԱՐԻՆ ԵՒ ՍՈՒՐԲ ԾՆՈՒՆԴԸ

## ԻՐԵՆՑ ԲԱՐԵԿԱՄՆԵՐՈՒՆ, ՅԱՃԱԽՈՐԴՆԵՐՈՒՆ ԵՒ ԱՇԽԱՏԱՒՈՐՆԵՐՈՒՆ

## ԿԸ ՇՆՈՐՀԱՒՈՐԵՆ

| | | | | |
|---|---|---|---|---|
| ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ<br>Գահիրէ Հեռ. 934908 | ԱՒԵՏԻՍ Ն. ԶԱԳԸՃԵԱՆ ԵՒ ԸՆԿ.<br>ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ<br>Աթապայի հրապարակ<br>Գահիրէ Հեռ. 906433-906451 | ՆԱՍԻՊ–ԹՈՐԳՈՄ | ԱՐԹՕ ԸԼԸՔՏԱՆԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 826211-826291 | ՎԱՀԱՆ Տ. ԱԼԵՔՍԱՆԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 28173 |
| ԶԱՐԵՀ ՍԱԳԱՅԵԱՆ<br>Հելիոպոլիս Հեռ. 62302 | ԵԴՈՒԱՐԴ ՋՕՐԱՅԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 906479 | ՕՆՆԻԿ Կ. ԱԼԵՔՍԱՆԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 900186 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՊԵՏՐՈՍ ՊԵՏԻԿԵԱՆ<br>Հելիոպոլիս Հեռ. 63459 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՅՈՎՀԱՆՆԷՍ ՔԷՀԵԱԵԱՆ<br>Հելիոպոլիս Հեռ. 62542 |
| ՎԱՐԴԳԷՍ ԵՒ ԱԼՊԷՌ<br>ՔՐԷՏԵԱՆ ԵՂԲԱՐՔ<br>Գահիրէ Հեռ. 902912-862386 | ԱՆԴՐԱՆԻԿ ՄԵՍՐՈՊԵԱՆ<br>ՊԱՄՊՈՒԷ ԿԱՐԱՍԻՆԵՐ<br>195, Ռամսէս Պողոտայ<br>Գահիրէ Հեռ. 900738 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՄԱՐՏԻԿ ԹԱԹԻԿԵԱՆ<br>Հեռ. 901883 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՌԱՖՖԻ ԳԱԼԸՆԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 27931 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՀԱՅԿԱԶՈՒՆ ՔԻՒՐՔՃԵԱՆ<br>Հելիոպոլիս Հեռ. 861452 |
| STUDIO ANTRO<br>ԱՆԴՐԱՆԻԿ ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ<br>37, Թալաաթ Հարպ փողոց<br>Գահիրէ Հեռ. 75542 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԳՐԻԳՈՐ ՇԱՀՊԷՆՏԷՐԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 62798 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԿԱՐՕ ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 47240 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԱԼՊԷՌ ԳԱԼԸՆԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 72050 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՅԱԿՈԲ ԷՔՍԷՐՃԵԱՆ<br>Հելիոպոլիս Հեռ. 865920 |
| ՏՈՔԹ. ՀԱՆՐԻ ԲԷՏԷՐԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 73321 | ՊԵՐՃ ՕՏԱՊԱՇԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 918516 | MAISON ROYALE<br>ԽՈՍՐՈՎ ԶԱՔԱՐԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 910402 | ՌՈՒԲԷՆ ԳԱԶԱԶԵԱՆ<br>Հելիոպոլիս Հեռ. 60861 | ARABIAN NEON &<br>FLUORESENT LIGHT CO.<br>ՓՕԼ ՔԻԼԻՏՃԵԱՆ<br>135, Մոհամէտ Ֆարիտ փողոց, Ապտին<br>Գահիրէ Հեռ. 43816-44792 |
| ՍԱՐԳԻՍ ՎՈՒԳՈՒՖԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 917039 | MICKY MOUSE<br>ՎԱՐՈՒԺԱՆ ԱԶՈՒԿԵԱՆ<br>26 Յուլիս պողոտայ, թիւ 8<br>Գահիրէ Հեռ. 915570 | ELPAR SHOES<br>ՎՐԷԺ Լ. ՍԷՖԷՐԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 24073 | LILI<br>ՅԱԿՈԲ Մ. ԺԱՄԿՈՉԵԱՆ<br>ՓՈՔՐԻԿՆԵՐՈՒ<br>ԿՕՇԻԿԻ ՎԱՃԱՌԱՏՈՒՆ<br>22, Քասր էլ Նիլ փողոց<br>Գահիրէ Հեռ. 54480 | ՎԱՀԷ ԴԵՐՁԱԿԵԱՆ ԵՒ ԸՆԿ.<br>103, Կումհուրիէ փողոց<br>Գահիրէ Հեռ. 900563 |
| ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԹՈՎՄԱՍ ՄԱՆՃԸԼԸՔԵԱՆ<br>Աղեքսանդրիա | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՍԱՀԱԿ ԳԱԼԱՅՃԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 910810 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԿԱՐԱՊԵՏ ԹԵՐԶԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 33713 | ՆՈՒՊԱՐ ԿԵՐԻԿԵԱՆ<br>ԳՈՀԱՐԱՎԱՃԱՌ<br>Գահիրէ | ՕՐ. ԶԱՊԷԼ ՍՏԵՓԱՆԵԱՆ<br>Գահիրէ |
| MIASON D'ART<br>ՑՈԼԱԿ ԵՐԶՆԿԱՑԵԱՆ ԵՒ ԸՆԿ.<br>29, Ապտէլ Խալէք Սարուաթ<br>Գահիրէ Հեռ. 40584 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՅՈՎՍԷՓ ԿԻՒՄԻՒՇԵԱՆ<br>ՈՍԿԵՐԻՉ<br>Աղեքսանդրիա Հեռ. 27139 | ԺԱՔ ՄԵՍՐՈՊԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 911220 | Ն. ԵՒ Ե. ԴԱՒԻԹԵԱՆ ԵՂԲԱՐՔ<br>Manchester House<br>Աղեքսանդրիա Հեռ. 24996 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՅԱԿՈԲ ՏԷՕՎԼԷԹԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 934872 |

ՋԱՀԱԿԻՐ

7 ՄԱՐՏ 1974

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

## ՆՇԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Ուրախութեամբ իմացանք նշանախօսութիւնը՝ Թորոնթոյեան մեր սիրելիներէն՝

### ԸՆԿԵՐ ՊԵՏՐՈՍ ՄՈՒՇԵԱՆԻ
### ԸՆԴ
### ՕՐ. ՆՈՒԱՐԴ ՃԻԶՄԷՃԵԱՆԻ

որ տեղի ունեցած է Շաբաթ, 9 Փետրուար 1974, Մոնթրէալի մէջ:

Նշանախօսութեան արարողութիւնը կատարած է՝ Արժանեինի հոգեւոր հայր Տ. Յարութիւն Ծ. Վրդ. Մուշեանը – որ այդ օրերուն այցի եկած էր իր հարազատներուն՝ ի Գանատա-, իր կողքին ունենալով Վեր. Աւետիս Զարիֆեանը եւ Արժ. Տ. Սեդրակ Քհնյ. Խաչատուրեանը:

Ապա հրաւիրեալները բոլոր մասնակցած են ճաշկերոյթին, պատրաստուած Ծիզմէճեան ընտանիքի անդամներու կողմէ: Պատուոյ սեղանին տեղ գրաւած են Հոգշ. Մուշեան Ծ. Վրդ.ը, Վեր. Զարիֆեանը, խօսեցեալ զոյգը, Տիկին Արշալոյս Մուշեանը եւ կնքահայրը՝ Տէր եւ Տիկին Աւետիս Մուշեանը:

Թամադայութիւնը վարած է Պր. Յակոբ Գալոզեանը, որ իր կատակախառն ելոյթներով մթնոլորտը առաւել զուարթացուցած է: Երգ, նուագ եւ բաժակաճառ այնքան խանդավառութիւն ստեղծած են, որ ներկաները չեն փափաքած որ այս ուրախ խնճոյքը վերջ գտնէ:

*Խմբագրութիւնս ջերմօրէն կը շնորհաւորէ նորոգ խօսեցեալ զոյգը եւ կը մաղթէ՝ որ անոնք արժանի ըլլան Սուրբ Պսակի խորհուրդին:*

## «ՀԱՅԱՍՏԱՆՑԻ ՄԸ՝ ԼՈՍ ԱՆՃԵԼԸՍԻ ՄԷՋ...»

(*Շարունակութիւն Դ. էջէն*)

*Պէյրութէն հեռացողը, եթէ հայու արիւն ունի իր երակներուն մէջ՝ միայն պէտք է ներգաղթէ, այսինքն՝ միա՛յն ՀԱՅԱՍՏԱՆ ԵՐԹԱՅ»:* Ես վերջացուցի, հիմա դո՛ւն խօսէ...

Խօսիմ, բայց ի՞նչ խօսիմ... թղթակցութեան ըսելիք չկայ, միայն թէ...

– Ի՞նչ կը մտմտաս, պարզապէս ըսած ես, չէ՞...

– Կեցի՛ր, հիմա ալ դո՛ւն մի աճապարեր, թղթակցութիւնը սքանչելի է, միայն թէ...

– Նորէն սպա՞ր...

– Թո՛յլ տուր որ ես ալ խօսիմ... Երկու հարցում ունիմ, երկու պարզ հարցում, որոնց կրնաս պատասխանել կամ չպատասխանել, ազատ ես...

– Ըսէ՛ նայինք...

– Դուն գիտե՞ս թէ Հայաստանէն, ինչպէս արաբական երկիրներէն, Ամերիկա գաղթող հայերը ուրկէ միջոցաւ ձեռք կը ձգեն ամերիկեան վիզան...

– ԱՆՉԱյէն...

– Լա՛ւ, գիտե՞ս թէ ով է նախագահը ԱՆՉԱյին...

– Ծորճ Մարտիկեանը...

– Հիմա ըսէ՝ այդ ինչպէ՞ս կ'ըլլայ որ ԱնՉԱյի նախագահ Ծորճ Մարտիկեանը «Ազդակ»ի կողմէ Ազգային Բարերա՛ր կ'անուանուի երբ... Ամերիկա տանիլը տնիր է...,

Լռելու կարգը խօսակիցիս է: Քիչ մը կը մտածէ, կը վարանի եւ ապա՝

– Լաւ, երկրորդ հարցո՞ւմդ...

– Տամ նաեւ երկրորդ հարցումս – Ինչպէս ըսի՝ ազատ ես երկուքին ալ պատասխանելու կամ լռելու: Եթէ Հայաստանէն Ամերիկա գացողները դաւաճան են, Հայաստանէն Միւնիխ գացողները ի՞նչ են ուրեմն – «Ազդակ»ի աշխատակի՞ց ու գործակի՞ց...

... Եւ այցելուս նախընտրեց լռել...

«ԿԱՆՉ» Գ. Ա.

---



## ԾՆՈՒՆԴ

Խմբագրութեանս ուղղուած նամակէ մը ուրախութեամբ կը տեղեկանանք, թէ՝ Տէր եւ Տիկին Գէորգ Տարօնի – Գրիգորեան (Պէյրութ), բաղդաւորուած են երկրորդ մանչ զաւակով մը, անցեալ 7 Փետրուար 1974, Հինգշաբթի գիշեր, Պէյրութի Ֆրանսական Մայրանոցին մէջ:

Նորածինը անուանակոչուած է Աւետիս, իր մօր հօրեղբօր անունով:

Այս ուրախ առիթով, խմբագրութիւնս կը շնորհաւորէ Տէր եւ Տիկին Գէորգ Տարօնին, Գրիգորեան եւ Փերտէնեան ընտանիքները, ինչպէս նաեւ քաջառողջ եւ երջանիկ կեանք կը մաղթէ նորածինին եւ անոր երէց եղբօր՝ Գրիգորին:

## «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

*Ընկեր Յովհ. Շէքէրճեան, (Նիկոսիա – Կիպրոս) առ ի գնահատութիւն Թերթիս հայրենասիրական ուղղութեան և հայապահպանման գործին բերած մեծ օժանդակութեան՝ կը նուիրէ* 500 *Ե. Դ.:*

*Տէր և Տիկին Գէորգ Տարօնի–Գրիգորեանի (Պէյրութ)՝ երկրորդ մանչ զաւակով մը բաղդաւորուելնուն ուրախ առթիւ, Տէր և Տիկին Կարօ Վարժապետեան կը նուիրեն* 200 *Ե. Դ.:*

*Ողբ. Արթիւր Թէրզեանի մահուան տխուր առթիւ՝ վասն ցաւակցութեան, Մէթր Պարոյր Մատիկեան կը նուիրէ* 100 *Ե. Դ.:*

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

(ԵԳԻՊՏԱԿԱՆ ԴԱՀԵԿԱՆՈՎ)

*Տիկին Այծեմնիկ Պօյաճեան, Արա, Արտա, Հէնգա և Եան իրենց սիրելի և անմոռանալի ամուսնոյն և հօր՝ ողբ. Վահէ Պօյաճեանի քաղցր յիշատակին կը նուիրեն.*

| | |
|---|---|
| *Հայ Գեղ. Միութեան* | 200 |
| *Հայկական Ընթերցասրահին* | 200 |
| *«Արեւ»ին* | 300 |
| *«Ջահակիր»ին* | 300 |

*Օր. Լօրնա Իշխանեանի ընդ Պր. Հրազդան Էթմէքճեանի (Պէյրութ) բարեբաստիկ ամուսնութեան ուրախ առթիւ վասն շնորհաւորութեան՝ Տէր և Տիկին Արթօ Պըլըքտանեան կը նուիրեն.*

| | |
|---|---|
| *Աւետարանական Եկեղեցւոյ* | 300 |
| *Գահիրէի Ազգատախնամին* | 300 |
| *Եկեղեցւոյ Պայծառութեան* | 200 |
| *«Արեւ»ին* | 100 |
| *«Ջահակիր»ին* | 100 |

*Տէր և Տիկին Գէորգ Տարօնի – Գրիգորեանի երկրորդ մանչ զաւակով մը բաղդաւորուելնուն բարեբաստիկ առիթով, Տէր և Տիկին Արթօ Պըլըքտանեան կ'ընեն հետեւեալ նուիրատուութիւնները.*

| | |
|---|---|
| *Գահիրէի Ազգատախնամին* | 100 |
| *«Ջահակիր»ին* | 100 |

## ՎԱՀԷ ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆԻ ՆԿԱՐՉԱՀԱՆԴԷՍԻՆ ԱՌԹԻՒ ԽՕՍՔ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

(Շար. Բ. էջէն)

դարձնէ իր նիւթը եւ դիտողին հաճոյք կը պատճառէ:

Անվարան կրնանք ըսել, որ Վահէ Վարժապետեան արուեստի սահմաններէն ներս մտած է արդէն, եւ արուեստագէտի կոչման արդար իրաւունք ստացած է: Կը մնայ այսուհետեւ, որ ինք տեղ քայլ չընէ, այլ յարատեւօրէն խուզարկէ նկարչական արուեստի անտառին մէջ, որպէսզի դուրս բերէ այնտեղէն ամէն ինչ՝ որ գեղեցիկ է եւ բարի:







## ԱՐՏԱԴՐՈՒԹԵԱՆ ՄԱՐԶՈՒՄԸ ՅԱՋՈՂ ԷՐ

( *Շարունակութիւն Գ. էջէն* )

եւ օրավարձքերու յաւելում: Կ'արժէ յիշել, թէ հաստատութեան տնօրէնը մեծ հոգ կը տանի իր գործաւորներուն վրայ: Անոնք բոլորն ալ կարելիութիւնները ունին լաւ աշխատանքի, իրենց որակը բարձրացնելու, ուսանելու եւ հանգչելու: Օրինակի համար, հաստատութեան գործաւորները ունին իրենց անձնական ուսումնական համալիրը, բնակարանը, մարզանքի սրահները, Մշակոյթի Պալատը, մանկամսուրները, մանկապարտէզները, հանգստեան տուները եւ բուժարանները:

Ասիկա հոգածութեան սքանչելի ձեւ է եւ մենք բան չ'ը ունինք աւելցնելիք հոս, այս կապակցութեամբ:

Ն. 0042

